ուար 25ին Մոսկուայի հետ կնքուած համաձայնութիւնները: Առաջինը կը վերաբերի երկու երկիրներու բարեկամութեան եւ գործակցութեան՝ ապահովելու համար ընդհանուր խաղաղութիւնը:

## Էռիօ եւս գոհ կ'երեւայ իր ճամբորդութենէն

Աօջի օր Ամերիկայէն Փարիզ վերադարձաւ նախկին վարչապետ Պ. Էռիօ: Մինչեւ Հավր դիմաւորելու գացած էին արտաքին եւ ներքին նախարարները եւ բազմաթիւ պաշտօնատարներ ու բարեկամներ: Պ. Էռիօ, որ խանդավառ ընդունելութիւն գտաւ նաեւ Սէն Լազարի կայարանին մէջ, շատ գոհ կ'երեւայ իր ճամբորդութենէն: Ահաւասիկ իր առաջին յայտարարութեանց ամփոփումը.

— Նախագահ Ռուզվէլթի հետ հիմնովին շօշափեցի հետեւեալ չորս խնդիրները. — 1. Համաշխարհային տնտեսական խորհրդաժողով. — 2. Զինաթափութեան եւ ապահովութեան խնդիր. — 3. Մաքսային զինադուլ՝ ապրիլ 29էն յունիս 12. — 4. Պատերազմական պարտքերու խնդիր: Այս բոլոր հարցերու մասին բերած եմ կարելի եղածին չափ ճշգրիտ ցուցմունքներ: Անշուշտ ամէնէն առաջ զեկուցում պիտի տամ հանրապետութեան նախագահին եւ կառավարութեան: Պարտք կը սեպեմ յիշեցնել թէ ես Ուաշինկթըն գացի իբրեւ տեղեկատու: Անշուշտ անձնական կարծիքներ ունիմ շօշափուած բոլոր հարցերու մասին, բայց ժամանակը չէ տպաւորութիւններս յայտնելու: Կը կարծեմ թէ լիովին, բայց ժամանակը չէ տպաւորութիւններս յայտնելու: Կը կարծեմ թէ լիովին կատարեցի ինծի յանձնուած պաշտօնը: Նախագահ Ռուզվէլթ յաճախ ակին կատարեցի ինծի յանձնուած պաշտօնը: Նախագահ Ռուզվէլթ յաճախ ակին կատարեցի ինծի յանձնուած պաշտօնը:

Ուաշինկթընի ընդունելութիւնն բրաւ ինծի: Ֆրանսայի ժողովուրդը պէտք է գիտնայ թէ չկայ մէկը որ աւելի բարեկամական ըլլայ իրեն հանդէպ քան այն մարդը որ այժմ գլուխն անցած է 120 միլիոն ժողովուրդի: Կը կարծեմ թէ Ամերիկայի մասնակցութիւնը՝ պիտի նպաստէ ապահովութեան կազմակերպման: Վստահ եմ թէ ամէն բան ըրի Ուաշինկթընի մէջ, Ֆրանսայի եւ խաղաղութեան դատին համար, որպէս զի մեր զաւակները այլ եւս չկրեն պատերազմին արհաւիրքները:

## Գերմանական պատուիրակն ալ...

Աօջի օր Ուաշինկթըն հասաւ Տոքթ. Շախթ, Գերմանիոյ ազգ. դրամատան տնօրէնը, որ մասնաւոր խօսակցութիւններ պիտի ունենայ նախագահ Ռուզվէլթի հետ: Տոքթ. Շախթ եւ իր նախորդը, Ուաշինկթընի դեսպան Տոքթ. Լութեր մասնագէտներ են տնտեսական եւ սեղանաւորական խնդիրներու եւ հետեւաբար իրենց խօսակցութիւնները մասնաւոր կարեւորութիւն կ'ունենան:

Ուաշինկթըն ղրկուած երկու անգլիացի մասնագէտները իրենց գործը լրացուցած ըլլալով, ճամբայ ելան դէպ ի Լոնտոն:

Ամերիկայի մէջ լուրջ մտահոգութիւն կը պատճառէ սթերլինին բարձրացումը՝ բաղդատմամբ տոլարին:

## «Մի՛ կրճատէք աշխատավարձը»

Նախագահ Ռուզվէլթ ճառ մը խօսելով Մ. Նահանգներու առեւտրական սենեակի միջազգային համագումարին մէջ, խոստացաւ աջակցիլ ամերիկեան ճարտարագործութեան՝ վերջ տալու համար անկարգութեան եւ անպարկեշտ մրցակցութեան: Այս առթիւ, գործարանատէրներէն պահանջեց երեք բան.— 1) Այլեւս նոր կրճատումներ չկատարել իրենց պաշտօնեաներու թոշակներուն վրայ եւ ընդհակառակն աւելցնել զանոնք, համաձայն նախանիւթերու գիներու բարձրացման.— 2) Դարման դնել անպարկեշտ մրցակցութեան.— 3) Մէկդի դնել մասնաւոր եւ եսասիրական շահերը, ընդհանուր բարօրութեան մէջ փնտռելով անոնց բարգաւաճումը:

Յ.

Հ. Դ.

## Հայր Աբրահամի եւ Օհան Կարոյի յիշատակին

Հ. Յ. Դ. ԵՒՐ. ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ կը հրաւիրէ Փարիզի եւ արուարձաններու ընկերներն ու համակիրները այսօր կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին, Société Savantesի D սրահին մէջ:

Կը խօսին ընկերներ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ եւ ՎՐԱՑԵԱՆ՝ Հայր Աբրահամի մասին, Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ եւ ՆԱՐԴՈՒՆԻ՝ Օհան Կարոյի:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

13 Մայիս Շաբաթ երեկոյ ժամը ճիշդ 9ին

**Salle du Conservatoire**

**2, Rue Conservatoire**

**(Métro: Bonne-Nouvelle, Cadet, Poissonnière)**

ՄՆԱՑԵԱՆ ՎԱՂԵՄԻ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲԻ ԴԵՐԱՍԱՆՈՒՀԻ

ՏԻԿԻՆ ՍԻՐԱՆՈՅՇ ԱԼԷՔՍԱՆԵԱՆ

կը ներկայացնէ Թրքահայ մօտաւոր անցեալ կեանքէն քաղուած

### ԿՆՃՌՈՏ ՀԱՆԳՈՅՑ

Թատերգութիւն 4 արար 1 պատկեր, Հեղինակ՝ Տիկ. ՍԻՐԱՆՈՅՇ ԱԼԷՔՍԱՆԵԱՆ

Մուտք՝ 5, 10, 15, 20, 25 փրանք

Տոմսերը կը ծախուին բոլոր հայ թերթերու խմբագրատուններ, Հրանտ Սամուէլ գրատունը, Ֆլօրիա եւ Լիլա ճաշարանները եւ Յ. Արթինեանի մօտ 26, rue Lesage, իսկ ներկայացման օրը՝ Թատրոնի կիշէն:

## Զուարթ գիշեր մը Մարսէյլի մէջ

Մայիս 20 Շաբաթ գիշեր

Բնական տարազով (ՆԱՍՐԷՏՏԻՆ ՀՕՃԱՆ) բնական լեզուով

Ղեկավարութեամբ Ամերիկայէն հասած յայտնի կատակերգակ՝

Հ. ՋՈՒՀԱՃԵԱՆԻ

ՊՐԷՊԱՆ ՄԱՐՍԷԵԷԻ ԸՆԴԱՐՁԱԿ ԵՒ ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԵՐԵՔ ԺԱՄ ԱՆԸՆԴՀԱՏ ԾԻԾԱՂ

## Երգահանդէս ԳՈՀԱՐԻԿ ԳԱՐԻՊԵԱՆԻ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ **YVONNE CURY**ի (Դաշնակահարուհի)

23 ՄԱՅԻՍ ԵՐԵՔՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 9ԻՆ

**Maison Gaveau - Salle des Quatuors**ի ՄԷՋ

**45, Rue La Boëtie. Métro: Miromesnil**

Տոմսերու գիները են. — 5, 10, 15, 25 փրանք

Կը ծախուին՝ Maison Gaveau, 45—47, Rue La Boëtie, Հրանտ — Սամուէլի Գրատունը, 51, Rue Monsieur-le-Prince եւ ՅԱՌԱՋի խմբագրատունը, 17, Rue Damesme:




Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)

ցոյցը։

*Այս առթիւ որոշուեցաւ նաեւ հաստատել ազգային վիճակախաղ մը, մէկ տարուան համար, իբրեւ եկամուտի աղբիւր։*

## *ՋՕՐ. ՓԼԱՍԹԻՐԱՍ ՖՐԱՆՍԱ ԵԿԱՒ*

Ջօր. փլասթիրաս, որ 14 ժամուան համար դիկտատուրա հաստատած էր անցեալ մարտին եւ յետոյ փախած, Մարսէյլ հասաւ հինգշաբթի օր։ Ան այժմ պիտի մնայ Նիսի շրջանին մէջ։

## *ԱՆԱԿՆԿԱԼ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ*

Պ. Կէօրինկ, Գերմանիոյ խորհրդարանին նախագահը, յանկարծ Հռոմ իջաւ մայիս 19ին, օդանաւով։ Քաղաքական շրջանակներու մէջ կը կարծեն թէ այս այցելութիւնը կապ ունի Գերմանիոյ եւ Աւստրիոյ միջեւ ծագած վէճին հետ, մանաւանդ որ Աւստրիոյ վարչապետը Հռոմ կը սպասուի Հոգեգալուստին, նոր պայմանագիր մը կնքելու համար Վատիկանի հետ։

Շուտով կը հասնի նաեւ Պ. Կէօպէլս, պրոպագանտի նախարարը։

⁂ Քաղաքական շրջանակներու մէջ կը պնդեն թէ Հիթլէրի նաւին չափաւորութեան մէջ կարեւոր դեր կատարած է Մուսոլինի, բացորոշ թելադրանքներ ընելով։

---



Ց. Հ. Դ. **Գաւառ**

*ԼԻՈՆԻ* Քրիստափոր, Ռոստոմ, Ջաւարեան, *Վիլլէօրպանի* Արամ, *եւ Կառ տը Վէզի* Անդրանիկ *խումբերու ընդհանուր անդամական ժողովը այս Չորեքշաբթի երեկոյ ժամը 8ին Հ. Յ. Դ. Լիոնի «Զաւարեան» Ֆրադարանը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։*

---

# «ՄԱՅԻՍ 28»Ը

## Հ. Հ. ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 15ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

**Նախաձեռնութեամբ՝ Հ. Հ. Պատուիրակութեան**

**Կը տօնուի Փարիզի մէջ Մայիս 27ին**

**Շաբաթ գիշեր ժամը 8.30էն մինչեւ առաւօտ**

**Petit Journalի սրահին մէջ**

**Կը նախագահէ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ**

*Կը խօսին՝* Ա. ԽԱՏԻՍԵԱՆ եւ ԿԱՐՕ ՍԱՍՈՒՆԻ

*Կը մասնակցին՝ Տիկ. Ա. ԳԵԻՈՆԵԱՆ, ՕՐ. ԱՎՆԱԴԱՄԵԱՆ եւ Պ. Ն. ՂՈՒԿԱՍԵԱՆ* (երգ)։

«*ՍԻՓԱՆ*» երգչախումբը ղեկավարութեամբ Պ. *Ս. ՅԱԿՈԲԵԱՆԻ*։

**Ballet plastique** *հինգ օրիորդներու կողմէ ղեկավարութեամբ Տիկին ԻՍԱՋԷՆԿՕԻ*

Թարիստ *ԺՕՐԺ, Օր. ՃԱՄՊԱԶ եւ Տիկ. ԹՈՄԱՆՈՎԱ* (դաշնակ)

*ՃԱԶ, ՕՐՔԷՍԹՐ*: *ՊԱՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ։ ՊՈՒՖԷ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐՈՎ,*

ՄՈՒՏՔ 7 Ֆրանք 50

×

*ՇԱՎԻԼԻ ՄԷՋ*

*28 ՄԱՅԻՍ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3ին*

**20, Avenue Ville d'Avray**

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*27 ՄԱՅԻՍ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8ին*

*ՊՐԷՊԱՆ ՄԱՐՍԷՅԼԷԻ ՄԷՋ*

Կը խօսին՝ ընկերներ Ս. ՎՐԱՑԵԱՆ եւ ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

×

ԼԻՈՆԻ ՄԷՋ

*ՅՈՒՆԻՍ 3ին ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ*

Մանրամասնութիւնները յաջորդով։

---

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Այսօր, Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 3ին Սեւրի Մուրատեան վարժարանին մէջ,* 26, rue Troyon, Sevres. *Կը դասախօսէ Վ. Հ. Վարդան Վ. Հացունի։ Նիւթ՝* պատմութիւն հայ տարազի» *ցուցադրում լուսարձակով։*

---



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)

# «ՄԱՅԻՍ 28»Ը
## Հ. Հ. ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 15ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*ՇԱՎԻԼԻ ՄԷՋ*

*ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ*

կազմակերպուած՝ *ԱՐՂՈՒԹԵԱՆ ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3ին*

**20, Avenue Ville d'Avray. Chaville**

Կը նախագահէ՝ ԿԱՐՕ ՍԱՍՈՒՆԻ

Կը խօսի՝ ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

երգ եւ արտասանութիւն՝ կը հրաւիրուին փարիզի եւ շրջաններու բոլոր քոյր կոմիտէներու եւ խումբերու ընկերները եւ համակիր հայրենակիցները՝ *Մուտք՝ 3 ֆրանք։*

×

## ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԻՆ ՄԷՋ

*ՊՈՒԼՎԱՐ – ՕՍՍՕ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ին*

*ՊԱՐ ՎԵՆՍԱՆԻ ՄԷՋ*

նախաձեռնութեամբ *ՎՌԱՄԵԱՆ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻՆ*

եւ մասնակցութեամբ *ԱԻՏՕ ԽՈՒՄԲԻ*

Կը նախագահէ՝ ընկերուհի ՔԻՊՐԻԹՃԵԱՆ

Կը խօսի՝ ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

×

*ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 7ին*

**Chalet de l'Ermitage (La Viste)***ի ՄԷՋ*

Կը նախագահէ՝ ընկերուհի ՔԻՊՐԻԹՃԵԱՆ

Կը խօսի՝ ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ

*ԼԱ – ՍԻՕԹԱ*

նախաձեռնութեամբ *ԽԱԺԱԿ ԽՈՒՄԲԻ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ին, ՊԱՐ ԻՏԷԱԼԻ ՄԷՋ*

Կը խօսի՝ ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

*ՍԷՆ – ԼՈՒ*

նախաձեռնութեամբ *ԱԿՆՈՒՆԻ ԽՈՒՄԲԻ*

եւ մասնակցութեամբ *ՀԱՄԱԶԱՍՊ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 7ին ԿԻԼԻԿԻԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

Կը խօսի՝ ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

*ՍԷՆ – ՍԱԹՈՒՐՆԷՆ (Ավինեօն)*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3ին*

*ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

նախաձեռնութեամբ *ԱՆԴՐԱՆԻԿ ԽՈՒՄԲԻ*

եւ մասնակցութեամբ *ՄՈՒՐԱՏ ԽՈՒՄԲԻ*

Կը խօսի՝ ընկ. Պ. ՀԻՒՍԵԱՆ

*ՍԱԼԻՆ – ՏԸ – ԺԻՐՐՕ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ին*

*ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

նախաձեռնութեամբ *ԲԱԲԳԷՆ ՍԻՒՆԻ ԽՈՒՄԲԻ*

եւ մասնակցութեամբ *ԱՌԼԻ ԸՆԿԵՐՆԵՐՈՒՆ*

Կը խօսի՝ ընկ. ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

---

Փարիզի Հարաւային Շրջանի

« ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ » ՄԻՈՒԹԵԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

*Տեղի կ'ունենայ 25 յունիս, Կիրակի օր*

*Կը խնդրուի միութիւններէն եւ կազմակերպութիւններէն նըկատի ունենալ սոյն թուականը։*

Մանրամասնութիւնները մօտ օրէն։

---



---

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

Ավինեոն, ՆԱԹ. — 70 ֆր.։

Մարսէյլ, Կ. Կ. — 140։

Տէսին ԳՈՐԾ. — 430։

Շավիլ, Յ. Ն. — 35։

Իսի-լէ-Մուլինօ, ՆՕՏ. ԵՂԲ. — 35։

Լիոն, Գ. Ք. — 20։

Կարտան, Ն. Գ. — 280։

Մարսէյլ, ԳՈՐԾ. — 1139։

Քոլոնպ, ՏԻԿ. Տ. — 140։

Լը Վան, Թ. Պ. — 105։

### ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

ՏԻԿ. ՓԱՓ. — Սկսած ղրկել մայիս 27էն։

## *Պէյրութի աղէտեալներուն համար*

Պորտոյի հանգանակութեան ցանկը.—

*Գրգ. Հալլաղեան, Կ. Հալաճեան 20ական ֆրանք։ Ե. Թուլումպաճեան, Լ. Սուգիասեան, Գ. Սարգիսեան, Յ. Քէլթէնճեան, Դ. Շաղլամեան, Ոնն, Ա. Քէնտէրեան, Կ. Տօնէրեան, Գ. Հալաճեան, Յ. Ազրապեան, Ճ. Տօնիկեան, Բ. Րէիզեան, Հայրապետ Արթինեան 10ական ֆրանք։ Յ. Ջօլաքեան, Մ. Ճերմակեան, Հ. Գալբաքճեան, Ա. Մարգարեան, Հ. Աբրահամեան, Ս. Կէտիկեան, Շ. Թէրզեան, Ս. Եսայեան, Լ. Գասպարեան, Կ. Վարդանեան, Յ. Աղլանեանեան 5ական ֆրանք։ Գումար՝ 225 ֆրանք։ (Տես «Յառաջ» թիւ 2195)։*

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ

*Ֆրանսահայ Կարմիր Խաչի Փարիզի մասնաճիւղը Ն. Պատգմ. Ժողովի փակման առթիւ ի պատիւ պատգամաւորներուն թէյասեղան մը սարքած ըլլալով, կը հրաւիրուին բոլոր անդամները եւ համակիրները այսօր, Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 4ին,* 71, Ave. Kléber:



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dumesme :-: PARIS (13e)

